Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 10 ԱՊՐԻԼ 1947

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ» ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 38—86։




# ՄԱՅԻՍԻ ՄԵԿԸ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՏՈՆԻ ՕՐՆ Է

*Մայիսի մեկը բոլոր երկրների աշխատավորների մարտական ուժերի ստուգատեսի օրն է։*

*Սովետական Միության ժողովուրդը, Հայրենական Մեծ պատերազմում պատմության մեջ չտեսնված փառավոր հաղթանակ տանելուց հետո, երկրորդ անգամ Մայիսի Մեկը տոնում է խաղաղ զարգացման պայմաններում։*

*Փայլուն հաղթանակը մեր երկրի սոցիալիստական ուժերի հետագա ծաղկման ու բարգավաճման համար բաց արեց նոր, չըտեսնված հեռանկարներ։*

*Հայրենական Մեծ պատերազմից հետո Սովետական Միության ժողովուրդը, հաղթող ժողովուրդը, մեր հարազատ Լենին-Ստալինի կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ձեռնամուխ եղավ խաղաղ*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

*Նյութեր զեկուցումների և զրույցների համար*



---

Խմբագրության հասցեն.— *Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, Հեռախոս՝* 38—86։

---



# ՄԱՅԻՍԻ ՄԵԿԸ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՏՈՆԻ ՕՐՆ Է

*Մայիսի մեկը բոլոր երկրների աշխատավորների մարտական ուժերի ստուգատեսի օրն է։*

*Սովետական Միության ժողովուրդը, Հայրենական Մեծ պատերազմում պատմության մեջ չտեսնված փառավոր հաղթանակ տանելուց հետո, երկրորդ անգամ Մայիսի Մեկը տոնում է խաղաղ զարգացման պայմաններում։*

*Փայլուն հաղթանակը մեր երկրի սոցիալիստական ուժերի հետագա ծաղկման ու բարգավաճման համար բաց արեց նոր, չըտեսնված հեռանկարներ։*

*Հայրենական Մեծ պատերազմից հետո Սովետական Միության ժողովուրդը, հաղթող ժողովուրդը, մեր հարազատ Լենին-Ստալինի կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ձեռնամուխ եղավ խաղաղ*

ստեղծագործ աշխատանքի։ ՍՍՌՄ Գերագույն Սովետն օրենք ընդունեց ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման 1946-1950 թ. թ. հնգամյա պլանի մասին։

Սովետական Միության աշխատավորները նոր հնգամյա պլանն ընդունեցին որպես իրենց կենսական շահերին համապատասխանող մարտական ծրագիր և այն իրագործելու համար ծավալեցին համաժողովրդական սոցիալիստական մրցություն։

1946 թվականին՝ ՍՍՌ Միության Գերագույն Սովետի ընտրությունները և 1947 թվականի փետրվարին միութենական ու ավտոնոմ ռեսպուբլիկաների Գերագույն Սովետների ընտրությունները, որոնց ընթացքում փայլուն հաղթանակ տարավ կոմունիստների և անպարտիականների ստալինյան բլոկը, հանդիսացան սովետական ժողովրդի բարոյական-քաղաքական միասնության վառ ցուցադրումը, կոմունիստական պարտիայի և սովետական իշխանության քաղաքականության փայլուն հաղթանակը։

Ընտրությունների ընթացքում Սովետական Միության բազմազգ ժողովուրդն է՛լ ավելի սերտ համախմբվեց կոմունիստական



պարտիայի և նրա մեծ առաջնորդ ընկեր Ստալինի շուրջը։

Ընտրությունների ժամանակ ստեղծվեց արտադրական նոր վերելք։ Աշխատավորական լայն մասսաները բազմապատկեցին իրենց հաջողությունները աշխատանքային ճակատում և խոստացան ժամկետից շուտ կատարել ու գերակատարել Ստալինյան նոր հնգամյա պլանը, որի «...հիմնական խնդիրներն են՝ վերականգնել երկրի տուժած շրջանները, վերականգնել արդյունաբերության և գյուղատնտեսության նախապատերազմյան մակարդակը և այնուհետև քիչ թե շատ զգալի չափով գերազանցել այդ մակարդակը» (Ստալին):

Նոր հնգամյա պլանի կենսագործման սապարեզում արդեն ձեռք են բերված խոշոր նվաճումներ։

Մեծ առաջնորդ ընկեր Ստալինի ղեկավարությամբ մեր ժողովուրդը փայլուն հաղթանակ տարավ թշնամու դեմ, մեծ Ստալինի ղեկավարությամբ Սովետական Միության ժողովուրդն արագորեն բուժում է պատերազմի հասցրած վերքերը, իրագործում է ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման հնգամյա պլանը։

* * *

Ստալինյան նոր հնգամյակի առաջին տարում՝ 1946 թվականին հիմնականում ավարտվեց ժողովրդական տնտեսության եռապատերազմյան վերակառուցումը, որը բացառիկ նշանակություն ունեցավ Սովետական Միության տնտեսական հզորության հետագա վերելքի համար։

Հնգամյա պլանով նախատեսված է վերականգնել և կառուցել 5900 գործարան, ֆաբրիկա, հանքահոր ու արդյունաբերական այլ ձեռնարկություն։ 1946 թվականի ընթացքում վերականգնվեց, կառուցվեց և գործարկվեց 800 խոշոր ձեռնարկություն, այդ թվում հնգամյա պլանով նախատեսված 45 դոմենյան հնոցից 6-ը, 165 մարտենյան հնոցից՝ 18-ը։ Գործարկվեց մեկ հզոր բլյումինգ (Մակեևկայում), 36 խոշոր ածխահանք, էլեկտրակայանների 117 տուրբին։ Վերականգնվեց ընկեր Ստալինի անվան Սպիտակ և Բալթիկ ծովերը միացնող ջրանցքը։ Տեքստիլ ձեռնարկություններում գործարկվել է մոտ 300 հազար իլիկ։ 1946 թվականի ընթացքում օգտագործման է հանձնվել 6



միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն և այլն։

Վերականգնվել և գործող ձեռնարկությունների շարքն են անցել այնպիսի գիգանտներ, ինչպիսիք են՝ Ստալինգրադի տրակտորային գործարանը, Կրեմատորսկի ծանր մեքենաշինության գործարանը, Խարկովի «Սերպ ի Մոլոտ» գործարանը, Վորոշիլովգրադի շոգեքարշաշինական գործարանը, Ռոստովի գյուղատնտեսական մեքենաշինության գործարանը, Կիևի «Արսենալ»-ը, Դնեպրի՝ Լենինի անվան հիդրոկայանի առաջին հերթը և այլն։

1946 թվականին ՍՍՌՄ-ում ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքն ավելացավ 20 տոկոսով՝ 1945 թվականի համեմատությամբ։ Միայն մեքենաշինությունը տվեց 18 միլիարդ 400 միլիոն ռուբլով ավելի քաղաքացիական արտադրանք։

Հատկապես ուժեղ թափով վերականգնըվում ու զարգանում են ծանր արդյունաբերությունը և երկաթուղային տրանսպորտը, առանց որոնց հնարավոր չէ ՍՍՌՄ ամբողջ ժողովրդական տնտեսության արագ վերականգնումն ու զարգացումը։

Արդյունաբերական արտադրության եռ-

պատերազմյան վերակառուցումն այն հետևանքն ունեցավ, որ 1946 թվականին՝ 1945 թվականի համեմատությամբ՝ 12 տոկոսով ավելացավ չուգունի ձուլումը, 9 տոկոսով՝ պողպատի, 13 տոկոսով՝ գլանվածքի, 10 տոկոսով ավելացավ քարածխի, 12 տոկոսով՝ նավթի հանույթը։ 30 անգամ աճեց մագիստրալային շոգեքարշերի արտադրությունը, 32 անգամ՝ ջրահակագործական դազգահների, 4,5 անգամ՝ կոմբայնների արտադրությունը։ 38 տոկոսով ավելացավ ավտոմոբիլների, 72 տոկոսով՝ տրակտորների թողարկումը, 17 տոկոսով՝ բամբակեղեն գործվածքների արտադրությունը, 30 տոկոսով՝ բրդեղեն գործվածքեղենինը, 28 տոկոսով՝ կաշվե կոշկեղենինը, 97 տոկոսով՝ ռետինե կոշկեղենինը, 69 տոկոսով՝ կենդանական յուղինը, 24 տոկոսով՝ հացինն ու բուլկեղենինը և այլն։

Այն գործարանները, որոնք մի ժամանակ թողարկում էին տանկեր, արկեր, ավտոմատներ, այժմ արտադրում են տրակտորներ, կոմբայններ, վագոններ զանազան մեքենաներ և գործիքներ։

„Ուրալի՝ ընկեր Ստալինի անվան խոշոր տանկային գործարանն այժմ թողարկում



է վագոններ երկաթուղային տրանսպորտի համար, Կիրովի անվան տանկային գործարանը թողարկում է թրթուրավոր հզոր տրակտորներ, Մոսկվայի՝ Վլադիմիր Իլյիչի անվան գործարանը, որն արկեր էր արտադրում, այժմ արտադրում է գյուղատնտեսական մեքենաներ և այլն։

Ստալինյան նոր հնգամյակի երկրորդ տարվա պլանները կատարելու և գերակատարելու համար ներկայումս ծավալված է համաժողովրդական լայն սոցիալիստական մրցություն։ Այդ է վկայում 1947 թվականի առաջին եռամսյակի պլանների կատարումը։

1946 թվականի առաջին եռամսյակի համեմատությամբ, 1947 թվականի առաջին եռամսյակում ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի աճումը քաղաքացիական արտադրանքի գծով կազմում է 20 տոկոս։ Որոշակի վերելք է նկատվում արդյունաբերության համարյա բոլոր ճյուղերում։

Սովետական Միության աշխատավորները, հաղթահարելով հետպատերազմյան դժվարությունները, արագ թափով առաջ են մղում արդյունաբերության վերականգնումն ու նրա հետագա զարգացումը։

Հատկապես արագ թափով վերականգնվում են թշնամու կողմից ավերված արդյունաբերական ձեռնարկությունները։ Խոշոր կապիտալ ներդրումները նպաստեցին այն բանին, որ օկուպացիայից տուժած շրջանների արդյունաբերության արտադրանքը 1946 թվականին ավելացավ 28 տոկոսով՝ 1945 թվականի համեմատությամբ։ Այդ թվում՝ չուգունի ձուլումն ավելացավ 59 տոկոսով, պողպատինը՝ 67 տոկոսով, քարածխի հանույթը Դոնբասում ավելացավ 30 տոկոսով և այլն։

Մոխրակույտերից և ավերակներից բարձրանում է և ծաղկում Սովետական Ուկրաինան։ 1946 թվականին և 1947 թվականի հունվարի ընթացքում Ուկրաինական ՍՍՌ-ում վերականգնվել է 25 դոմենյան հնոց, 58 պողպատաձուլական ագրեգատ, վերականգնվող 104 մեքենաշինական գործարաններից 102-ն արդեն տալիս են հիմնական արտադրանք։

1946 թվականին երկաթուղիներում միջին բեռնումն աճեց 13 տոկոսով՝ 1945 թվականի համեմատությամբ, ուղևորների փոխադրումն ավելացավ 1,3 անգամ։ Խոշոր աճ



տեղի ունեցավ նաև քաղաքացիական օդային նավատորմի, ավտոմոբիլային, ծովային ու գետային տրանսպորտների գծով։

***

1946 թվականի ընթացքում ՍՍՌՄ եվրոպական մասի զգալի տերիտորիայում կլիմայական անբարենպաստ պայմանները՝ ուժեղ երաշտը, նվազեցրին ապրանքային հացահատիկի արտադրանքը։ Այնուամենայնիվ 1946 թվականին ապրանքային հացահատիկի արտադրանքն ավելի էր 1921 թվականից, չնայած որ 1946 թվականի երաշտն իր մասշտաբով ավելի մեծ էր, քան 1921 թվականինը։ Հենց այդ փաստը վառ և ակնառու ապացույց է, թե որքան մեծ են սոցիալիստական սիստեմի առավելությունները, շնորհիվ գյուղատնտեսության մեջ կազմակերպված մեքենատրակտորային կայանների, կոլխոզների ու սովխոզների։

ՍՍՌՄ այն շրջանները, որոնք չէին տուժել երաշտից, զգալիորեն բարձրացրին հացահատիկի բերքը։ Ղազախստանում և Արևմտյան Սիբիրում հացահատիկի բերքը 1946 թվականին ավելացավ մեկ և կես անգամ՝ 1945 թվականի համեմատությամբ,

իսկ Ալթայում՝ 2,3 անգամ։ Բամբակի արտադրանքը ՍՍՌՄ-ում ավելացավ 34 տոկոսով։

ՀամԿ(բ)Պ Կենտկոմի փետրվարյան պլենումի որոշումը՝ «Հետպատերազմյան ժամանակաշրջանում գյուղատնտեսության վերելքի միջոցառումների մասին», որը ՍՍՌՄ-ում գյուղատնտեսության հետագա վերելքի համար պայքարելու մի ծավալուն ծրագիր է, Սովետական Միության ողջ աշխատավորության կողմից ընդունվեց բացառիկ խանդավառությամբ։ Ներկայումս մեր կոլխոզային գյուղացիությունը անսահման եռանդով ձեռնամուխ է եղել այդ ծրագրի բոլշևիկյան կենսագործմանը։

Գյուղատնտեսության մեջ վերելք ստեղծելու գործին ո՛չ երկիրն է մասնակցում, հանուն այն բանի, որ մեզ մոտ ստեղծվի մթերքների առատություն և առատ հումք՝ արդյունաբերության համար։

Այս տարվա գարնանային դաշտային աշխատանքների նախապատրաստումը կատարվեց ավելի բարձր մակարդակով, քան 1946 թվականին։ Մեքենատրակտորային կայանները տրակտորների նորոգումը կատարեցին ժամանակին և ավելի բարձր որա-



կով։ Անցյալ տարվա համեմատությամբ ավելի վաղ և ավելի կազմակերպված է ընթանում գարնանացանը։ Նախնական տվյալները ցույց են տալիս, որ աշնանացանը բավականին լավ վիճակումն է։ Այս բոլորը ապագա բարձր բերքի հաստատուն երաշխիքն են։

***

Ստալինյան նոր հնգամյակի առաջին տարում ծավալվեց նաև ապրանքաշրջանառությունն ու սովետական առևտուրը։ Բնակչությանը պարենային ապրանքներ վաճառվել են 15 տոկոսով ավելի, իսկ արդյունաբերական ապրանքներ՝ 85 տոկոսով ավելի՝ 1945 թվականի համեմատությամբ։

1947 թվականի առաջին եռամսյակում տեղի ունեցավ ապրանքաշրջանառության նոր աճում՝ 25 տոկոսով, 1946 թվականի առաջին եռամսյակի համեմատությամբ։ Կոոպերատիվ առևտրի մանրածախ շրջանառությունը քաղաքներում աճեց երեք անգամ։

***

Բանվորների և ծառայողների թիվը ժողովրդական տնտեսության մեջ 1946 թվա-

կանին ավելացավ երեք միլիոնով 1945 թվականի համեմատությամբ։ 1946 թվականին և 1947 թվականի առաջին եռամսյակի ընթացքում երկրին 608 հազար որակյալ երիտասարդ բանվորներ են տվել արհեստագործական, երկաթուղային ուսումնարանները և ֆաբգործուսները։

Տարրական և միջնակարգ դպրոցներում սովորողների թիվն ավելացավ երկու միլիոն 400 հազար աշակերտով, ԲՈՒՀ-երում սովորողներինը՝ 109 հազարով։ Ընդարձակվում է գիտահետազոտական հաստատությունների, բուժական և սանիտարական հիմնարկների, սանատորիաների, հանգստյան տների ցանցը։

***

Խոշոր աշխատանք է տարվում Սովետական Միության անբաժան մասը կազմող Սովետական Հայաստանում ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման 1946-1950 թվականների հնգամյա պլանը կենսագործելու ուղղությամբ։

Ստալինյան նոր հնգամյակի առաջին տարում Ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքը 1945 թվ-



վականի համեմատությամբ աճեց 13 տոկոսով։ Ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ աշխատանքների ծավալը 1946 թվականին կազմեց 140 տոկոս՝ նախորդ տարվա համեմատությամբ։

1946 թվականի ընթացքում Ռեսպուբլիկայում յուրացվեց էլեկտրոկաբելի, տրանսֆորմատորների, լուսամուտի ապակու, բրդեղեն գործվածքների արտադրությունը, ծավալվեց մետաղահատ դազգահների, ավտոդողերի արտադրությունը։ 1946 թվականին գործարկվեց 15 արդյունաբերական ձեռնարկություն։ Տեղական արդյունաբերության ձեռնարկությունները ծավալեցին աշխատանքը և յուրացրին մետաղյա ամանեղենի, մահճակալների, ապակյա ու պլաստմասսայից պատրաստվող իրերի արտադրությունը։

Ռեսպուբլիկայում կապիտալ աշխատանքների 1946 թվականի պլանը կատարվել և գերակատարվել է սև մետալուրգիայի ձեռնարկությունների գծով 190 տոկոսով, գունավոր մետալուրգիայի 116 տոկոսով, էլեկտրակայանների՝ 235 տոկոսով, քիմիական արդյունաբերության ձեռնարկությունների՝ 139 տոկոսով, ռետինի արդյունաբերության՝ 163, տեքստիլ արդյունա-

բերության՝ 118 տոկոսով, տեղական արդյունաբերության ձեռնարկությունների գծով 291 տոկոսով և այլն։

Ստալինյան նոր հնգամյակի առաջին տարում հատկապես բուռն թափով ծավալվեց բնակարանային շինարարությունը, որի ծավալը 1945 թվականի համեմատությամբ 1946 թվականին կազմում է 336 տոկոս։ Առանձնապես մեծ ծավալ է ստացել արտասահմանից Սովետական Հայաստան ներգաղթած հայերի համար կատարվող բնակարանային շինարարությունը։

Խոշոր հաջողությունների է հասել Ռեսպուբլիկան նաև գյուղատնտեսության բնագավառում։ Անցյալ տարի կոլխոզները կատարեցին ցանքի պլանը և 1945 թվականի համեմատությամբ, չնայած աննպաստ կլիմայական պայմաններին, հացահատիկային կուլտուրաների բերք ստացան 3,7 տոկոսով ավելի, բամբակ՝ 8,1 տոկոսով, շաքարի ճակնդեղ՝ 18,2 տոկոսով, ծխախոտ՝ 13,2 տոկոսով, կարտոֆիլ՝ 3,2 տոկոսով։

Հատկապես հացահատիկի բարձր բերք ստացան Թալինի, Նոր-Բայազետի, Մարտունու, Աշտարակի, Ախուրյանի շրջանների կոլխոզները։



Ռեսպուբլիկայում աճել է նաև անասունների գլխաքանակը։

Մեծ չափերի է հասել պարենային ապրանքների արտադրությունը և ծավալվել է պարենային մթերքների կոոպերատիվ առևտուրը։

1946 թվականի ընթացքում բանվոր-ծառայողների թիվը Ռեսպուբլիկայում ավելացել է մոտ 16 հազարով։ Տարրական և միջնակարգ դպրոցներում սովորողների թիվը ավելացել է մոտ 23 հազարով։ Ընդարձակվել է բուժհիմնարկների ցանցը։

Ստալինյան նոր հնգամյակի երկրորդ տարվա՝ 1947 թվականի առաջին եռամսյակի պլանների կատարումը արդյունաբերության գծով, համեմատած 1946 թվականի առաջին եռամսյակի հետ, աճել է 21 տոկոսով։ Հայկական ՍՍՌ արդյունաբերության համախառն արտադրանքի մակարդակը հասել և գերազանցել է նախապատերազմյան՝ 1940 թվականի առաջին եռամսյակի մակարդակից 17 տոկոսով։

***

Ավելի հոյակապ հեռանկարներ են բացվում Սովետական Միության ժողովուրդների առջև հնգամյակի ներկա և հետագա տարիների ընթացքում։

Թե ինչ չափի ու ծավալի է հասնելու ժողովրդական տնտեսության զարգացումը Ստալինյան նոր հնգամյակի հետագա տարիներին, այդ երևում է հետևյալից.

Միայն 1950 թվականին ձուլվելու է 62 միլիոն 700 հազար տոննա չուգուն, պողպատ և գլանվածք միասին վերցրած։ Արդյունահանվելու է 250 միլիոն տոննա քարածուխ, 35 միլիոն 400 հազար տոննա նավթ, արտադրվելու է 500 հազար ավտոմոբիլ, 112 հազար տրակտոր, 4 միլիարդ 845 միլիոն մետր բամբակյա և բրդյա գործվածքներ, 328 միլիոն 600 հազար զույգ կոշիկ, 127 միլիոն տոննա հացահատիկ, մեկ միլիոն 155 հազար տոննա կենդանական և բուսական յուղ, 2 միլիոն 400 հազար տոննա շաքար, 19 միլիոն տոննա ալյուր և այլն։

Ժողովրդական տնտեսության ետպատերազմյան վերականգնումը և զարգացումը մեծ և բարդ խնդիր է։ Այդ խնդիրը հաջողությամբ իրագործվում է ՍՍՌՄ-ում, շնոր-



հիվ սոցիալիստական սիստեմի առավելության, որը զերծ է այն անհաղթահարելի դժվարություններից, որոնք հատուկ են կապիտալիստական երկրներին։

Հայտնի է, որ ԱՄՆ-ում պատերազմից հետո փակվեցին շատ ձեռնարկություններ, փողոց նետվեցին տասնյակ հազարավոր բանվորներ, նորից սկսեցին ծայր առնել գործադուլները։

Սովետական Միությունը, որը կանգնած է ինչպես մի անառիկ բերդ, որին ուղղված են ամբողջ աշխարհի առաջադեմ մարդկության հայացքները, հսկայական և պլանավորված տնտեսություն է վարում։ Այդ մասին է խոսում հենց միայն այն փաստը, որ 1946—1950 թվականների ընթացքում վերականգնվելու և կառուցվելու են 5900 խոշոր ձեռնարկություն, իսկ հնգամյակի ընթացքում կապիտալ ներդրումները կազմելու են 250,3 միլիարդ ռուբլի։

***

Տնտեսական շինարարության բնագավառում ձեռք բերված այս վիթխարի նվաճումների հետ միասին, ետպատերազմյան ժամանակաշրջանում է՛լ ավելի ամրապնդվեցին Սովետական Միության միջազգային դիրքերը։

Հիտլերյան Գերմանիայի և նրա համագործակիցների դեմ սովետական ժողովրդի տարած պատմական հաղթանակը փոխեց ուժերի փոխհարաբերությունը միջազգային ասպարեզում, ամրապնդեց դեմոկրատիայի ճակատը միջազգային մասշտաբով։

Ընկեր Ստալինը 1946 թվականի մայիսմեկյան իր պատմական Հրամանի մեջ ասաց. «Ֆաշիզմի և համաշխարհային ագրեսիայի հիմնական օջախների ջախջախումն ու լիկվիդացիան խոր փոփոխություններ առաջ բերեցին աշխարհի ժողովուրդների քաղաքական կյանքում, ժողովուրդների մեջ լայնորեն աճեցրին դեմոկրատական շարժումը։ Պատերազմի փորձով հարստացած՝ ժողովրդական մասսաները հասկացան, որ պետությունների բախտը չի կարելի վստահել նեղ-կաստայական և հակաժողովրդական, շահամոլ նպատակներ հետապնդող ռեակցիոն կառավարողներին։ Հենց դրա համար էլ ժողովուրդները, չցանկանալով այլևս հին ձևով ապրել, իրենց պետությունների բախտը վերցնում են իրենց ձեռքը, հաստատում են դեմոկրատական կարգեր և ակտիվ պայքար են մղում ռեակցիայի ուժերի դեմ, նոր պատերազմի հրձիգների դեմ»։

Սոցիալիզմի դեմոկրատիան շատ ժողո-



վուրդների համար օրինակ ծառայեց իրենց մոտ դեմոկրատական կարգեր ստեղծելու գործում։ Եվրոպայի հարավային և հարավ-արևելյան մի շարք երկրների՝ Հարավսլավիայի, Չեխոսլովակիայի, Լեհաստանի, Ալբանիայի, Բուլղարիայի, Ռումինիայի ժողովուրդներն իրենց մոտ ստեղծեցին ժողովրդական-դեմոկրատական կառավարություններ, որոնք հաջողությամբ բուժում են պատերազմի հասցրած ծանր վերքերը և առաջ են մղում իրենց երկրների տնտեսական ու քաղաքական զարգացումը։ Այդ երկրների դեմոկրատական վերակառուցումը խոշորագույն գործոն է ժողովուրդների խաղաղությունը և անվտանգությունը պահպանելու համար։

Տևական խաղաղություն ստեղծելու գործում կարևորագույն նշանակություն ունի գերմանական հարցի լուծումը, որ ներկայումս քննարկվում է Արտաքին Գործերի Մինիստրների Մոսկվայի խորհրդում։

Գերմանիայի նկատմամբ մեր վերաբերմունքի հարցը բազմիցս ընդգծել է ընկեր Ստալինը։ Նա ասել է, որ Գերմանիայի պարտությունից հետո Եվրոպայում պետք է «...այնպիսի կարգ սահմանենք, որ լրիվին բացառեր Գերմանիայի կողմից նոր ագրե-

սիայի հնարավորությունը», որ Գերմանիայի ապառազմականացումը և դեմոկրատացումն ամենակարևոր երաշխիքներից մեկն է ամուր ու տևական խաղաղություն հաստատելու համար։

Սովետական կառավարությունը հետևողականորեն պահանջում է լուրջ միջոցներ ձեռնարկել Գերմանիայի ռազմական պոտենցիալը լիկվիդացնելու համար, որպեսզի նրան հնարավորություն չտրվի վերածնվելու որպես ագրեսիվ ուժ։

Գերմանիայի ապառազմականացման ու դեմոկրատացման հարցի մասին հատուկ որոշումներ ընդունվեցին երեք տերությունների Ղրիմի և Բեռլինի կոնֆերանսներում։ Սովետական Միությունը, հավատարիմ այդ որոշումներին, Արտաքին Գործերի Մինիստրների ներկայիս Մոսկվայի Խորհրդում շարունակում է պաշտպանել այն գիծը, որը կապահովի Գերմանիայի ապառազմականացումը, դեմոկրատացումը և նրա կողմից դաշնակիցներին հասցված վնասի արդարացի հատուցումը։

Հանդես գալով Արտաքին Գործերի Մինիստրների Խորհրդի նիստում, սովետական դելեգացիայի ղեկավար ընկ. Մոլոտովը մատնանշեց, թե Սովետական Միությունն



ինչպիսի նշանակություն է տալիս Գերմանիայից ռեպարացիաները գանձելու հարցին։ «Սովետական Միության համար,— ասաց ընկեր Մոլոտովը,— չի կարող լինել գերմանական պրոբլեմի լուծում, առանց ռեպարացիաների հարցի լուծման։ Դա ոչ միայն սովետական դելեգացիայի կարծիքն է,— այստեղ դահլիճում մենք շատ չենք,— դա սովետական բոլոր մարդկանց կարծիքն է»։

Ռեպարացիաների հարցը սերտորեն կապված է գերմանական արդյունաբերության մակարդակի և Գերմանիայի տնտեսական միասնությունն ապահովելու պրոբլեմի հետ։ Ուստի Սովետական կառավարությունը գտնում է, որ անհրաժեշտ է Գերմանիայի խաղաղ արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման հնարավորություն ստեղծել։

Սովետական Միության այդ տեսակետները համապատասխանում են ամբողջ պրոգրեսիվ մարդկության շահերին։ Մինչդեռ Սովետական Միության այդ միանգամայն արդարացի առաջարկները լուրջ դիմադրության են հանդիպում Ամերիկայի և Անգլիայի ներկայացուցիչների կողմից։

Միևնույն ժամանակ ներկայումս Ամերիկայում որոշ ռեակցիոն տարրեր լուրջ դըժ-

վարությունները են ստեղծում՝ տևական խաղաղություն հաստատելու ճանապարհին։ Տրումենը դիմում է մի շարք միակողմանի գործողությունների, որոնք հեղինակազրկում են Միավորված Ազգերի կազմակերպությունը։ Տրումենի վերջին ուղերձը կոնգրեսին՝ Հունաստանին և Թյուրքիային օգնություն ցույց տալու մասին, բացահայտում է նրա էքսպանսիոնիստական իմպերիալիստական մտադրությունները։ Տրումենի ուղերձը նշանակում է՝ վերացնել Հունաստանի ինքնուրույնությունը և այն դարձնել ռազմական բազա՝ Ամերիկայի համար։

Տրումենն օգնություն է առաջարկում նաև Թյուրքիային, որը պատերազմի ընթացքում օգնում էր Գերմանիային։ Տրումենի ուղերձը կոնգրեսին և այդ ուղերձի մեջ հռչակված քաղաքականությունը չեն ծառայում խաղաղության և անվտանգության գործին։

Տրումենյան քաղաքականությունը խաղաղության գործի համար վտանգ է ստեղծել նաև Հեռավոր Արևելքում։ ԱՄՆ-ը միջամտում է Չինաստանի ներքին գործերին, խախտելով գոյություն ունեցող համաձայնությունը օտարերկրյա զորքերը Չինաստանից դուրս բերելու մասին։



Ամերիկայի միջամտությունը Չինաստանի ներքին գործերին հետապնդում է բացահայտ իմպերիալիստական— էքսպանսիոնիստական նպատակներ, սակայն «համաշխարհային տիրապետության յուրաքանչյուր պլան իրականացնելու փորձերն անխուսափելիորեն դատապարտված են տապալման» («Պրավդա»)։

Պետք է հիշել, որ ռեակցիայի ուժերը դեռ լիովին ջախջախված չեն և նրանք լուրջ վտանգ են ներկայացնում ազատասեր ժողովուրդների խաղաղ գոյության համար։ Ուստի անհրաժեշտ է զգաստ պահպանել Հայրենական Մեծ պատերազմում սովետական ժողովրդի ձեռք բերած նվաճումները, հետևողականորեն պաշտպանել մեր Հայրենիքի շահերը։

Սովետական Միությունը, ինչպես մինչև այժմ, այնպես և հետագայում կշարունակի մերկացնել ռեակցիոն-իմպերիալիստական տենդենցները, իր շուրջը համախմբելով դեմոկրատական ուժերին, տևական դեմոկրատական խաղաղության պահպանման համար։

Խաղաղությունը և անվտանգությունը պահպանելու համար մենք պետք է էլ ավելի ամրապնդենք մեր զինված ուժերը, ժա-

մանակին կատարենք ու գերակատարենք Ստալինյան նոր հնգամյա պլանը, բարձրացնենք և առաջ մղենք մեր ժողովրդական տնտեսության զարգացումը։

Սովետական Միության բազմազգ ժողովուրդը մեր սոցիալիստական Հայրենիքի հետագա ծաղկման և նրա ռազմա-տնտեսական հզորությունն ամրապնդելու ստալինյան հանճարեղ ծրագրով զինված, Մայիսի մեկը դիմավորում է աշխատանքի և պայքարի մեջ ձեռք բերած նորանոր փայլուն նվաճումներով։

Լենինի-Ստալինի պարտիայի և մեծ առաջնորդ ընկեր Ստալինի գլխավորությամբ մեր ժողովուրդը, հաղթահարելով բոլոր դժվարությունները, վստահ գնում է դեպի իր լուսաշող ապագան, դեպի կոմունիզմի հաղթանակը մեր երկրում։

---

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՓՈԽԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Հայրենական մեծ պատերազմի հաղթական ավարտումից հետո կրկին վերադառնալով խաղաղ ստեղծագործ աշխատանքի, Սովետական Միության ժողովուրդները, բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ, իրենց բոլոր ուժերը գործի են դրել պատերազմի ծանր հետևանքներն ամենաարագ կերպով վերացնելու, սոցիալիզմի երկրի տնտեսական ու ռազմական հզորությունն է՛լ ավելի ամրապնդելու համար։

Խոսելով Սովետական պետության մերձավորագույն խնդիրների մասին, ընկեր Ստալինն ասաց.

«Մենք պետք է ամենակարճ ժամանակամիջոցում բուժենք մեր երկրին թշնամու հասցրած վերքերը, վերականգնենք ժողովրդական տնտեսության զարգացման մինչպատերազմյան մակարդակը, այն հաշվով,

որ մոտակա ժամանակում գգալիորեն գե-
րազանցենք այդ մակարդակը, բարձրացնենք
ժողովրդի նյութական բարեկեցությունը և
է՛լ ավելի ամրապնդենք Սովետական պե-
տության ռազմա-տնտեսական հզորությու-
նը»։

Առաջնորդի այս խոսքերը սովետական
ժողովուրդն ընդունեց իբրև մարտական
ծրագիր, որը խորապես համապատասխա-
նում է նրա կենսական շահերին։

1946-1950 թ. թ. ժողովրդական տնտե-
սության վերականգնման և զարգացման
հնգամյա պլանը, որը սովետական ժողո-
վրդի ստեղծարար աշխատանքի հոյակապ
ծրագիրն է, փայլուն կերպով կենսագործ-
վում է։

Հետպատերազմյան հնգամյակի առաջին
տարին նշանավորվեց գգալի նվաճումներով
ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղե-
րում։ ՍՍՌՄ Պետպլանի տվյալները՝ ժո-
ղովրդական տնտեսության զարգացման
1946 թվականի և 1947 թվականի առաջին
եռամսյակի արդյունքների մասին, դրա ակ-
նառու ապացույցն են։

Արդյունաբերական արտադրանքը հետպա-
տերազմյան առաջին տարում՝ 1945 թվակա-



նի համեմատությամբ՝ աճեց 20 տոկոսով,
ապրանքաշրջանառությունը՝ 30 տոկոսով,
երկաթուղիների օրական միջին բեռնումը՝
13 տոկոսով։ 1946 թվականին կառուցվել և
շահագործման են հանձնվել մոտ 800 պե-
տական արդյունաբերական ձեռնարկու-
թյուններ։

Նոր հնգամյակի առաջին տարվա խոշո-
րագույն նվաճումներից մեկը բանվորների և
ծառայողների թվի աճումն է ժողովրդական
տնտեսության մեջ 3 միլլիոն մարդով, բան-
վորների ու ծառայողների հերթական արձա-
կուրդների լրիվ վերականգնումը և մասսա-
յական արտաժամյա աշխատանքների վե-
րացումը, որոնք մտցվել էին պատերազմի
ժամանակ։

Սովետական պետությունը մեծ ուշա-
դրություն է նվիրում լուսավորության, ա-
ռողջապահության, սոցիալական ապահո-
վության հետագա զարգացմանը, գիտու-
թյան, գրականության, արվեստի ծաղկմանը
մեր երկրում։

Սովետական երկրի առջև լուրջ խնդիրներ
են կանգնած Ստալինյան նոր հնգամյակի
երկրորդ տարում։ Նոր հնգամյակի երկ-
րորդ տարվա պետական պլանը բաց է ա-

նում մեր հետագա աճման ու ծաղկման լայն հեռանկարներ։ 1947 թվականին պետք է ապահովվի ծանր արդյունաբերության, գյուղատնտեսության, տրանսպորտի հետագա վերելքը, պետք է լայնորեն ծավալվի թեթև, տեքստիլ և սննդի արդյունաբերությունը։ Նոր հնգամյակի տարիների ընթացքում վերականգնվելու և շահագործման են հանձնվելու 5.900 պետական արդյունաբերական ձեռնարկություններ։

Ստալինյան նոր հնգամյակով նախատեսված աշխատանքների վիթխարի ծրագրի կենսագործումը պահանջում է հսկայական միջոցների ներդրում։ Հնգամյակի ընթացքում ժողովրդական տնտեսության մեջ կատարվող միայն կենտրոնացված ներդրումները կազմում են 250,3 միլիարդ ռուբլի (1945 թ. նախահաշվային գներով)։

Ժողովրդական տնտեսության, կուլտուրայի և երկրի պաշտպանության կարիքների համար կատարվող բոլոր ծախսերի հիմնական մասը անցնում է պետական բյուջեով։ Ստալինյան նոր հնգամյակի երկրորդ տարվա խնդիրները իրենց վառ արտահայտությունն են գտել ՍՍՌՄ 1947 թվականի պետական բյուջեում, որը հաստատվեց ՍՍՌՄ



Գերագույն Սովետի վերջին սեսիայի կողմից։

Բյուջեի եկամուտները նախատեսված են 394,2 միլիարդ ռուբլի, որը 22,1 տոկոսով ավելի է անցյալ տարվա համեմատությամբ, իսկ ծախսերը՝ 374,1 միլիարդ ռուբլի, կամ 23 տոկոսով ավելի՝ անցյալ տարվա համեմատությամբ։

Ժողովրդական տնտեսության ֆինանսավորման համար 1947 թվականին հատկացված է 131,9 միլիարդ ռուբլի, 1946 թվականի բյուջեով հատկացված 95,7 միլիարդ ռուբլու փոխարեն։ Սոցիալ-կուլտուրական ձեռնարկումների՝ լուսավորության, առողջապահության, ֆիզկուլտուրայի, պետական սոցիալական ապահովագրության, բազմազավակ ու միայնակ մայրերին տրվող պետական նպաստների, սոցիալական ապահովության կարիքների համար կատարվող ծախսերը այս տարվա բյուջեում նախատեսված են 107,2 միլիարդ ռուբլի, կամ 26 միլիարդ ռուբլով ավելի, նախորդ տարվա համեմատությամբ։

Եկամտի ի՞նչ աղբյուրներից է Սովետական պետությունը միջոցներ ստանում այդ վիթխարի ծախսերը կատարելու համար։

*Սովետական պետական բյուջեի հիմնական եկամտային աղբյուրը սոցիալիստական տնտեսության ձեռնարկություններում ստեղծվող կուտակումներն են։*

*Դրա հետ միասին, պետության եկամտային աղբյուրների մեջ զգալի տեղ են գրավում բնակչության աշխատանքային խնայողությունները, որոնք կամավոր կարգով ներգրավվում են սոցիալիստական շինարարությունը ֆինանսավորելու նպատակով։*

*Պետական բյուջեի մյուս եկամտային աղբյուրը սովետական երկրի պետական փոխառություններն են, որոնք մեր ժողովրդական տնտեսության զարգացման բոլոր էտապներում աչքի ընկնող տեղ են գրավել երկրի էկոնոմիկայի մեջ։ Սովետական փոխառությունների զարգացումն ամենասերտ կերպով կապված է երկրի տնտեսական ու քաղաքական կյանքի զարգացման ողջ ընթացքի հետ։*

*Սովետական կառավարությունն առաջին անգամ ներքին փոխառություններին դիմեց իմպերիալիստական ու քաղաքացիական պատերազմներից հետո ժողովրդական տնտեսության վերականգնման տարիներին։ Այդ ժամանակաշրջանում բաց թողնված*



*փոխառությունները մեծ դեր խաղացին պատերազմի հետևանքով ավերված ժողովրդական տնտեսությունը վերականգնելու գործում։*

*Մեր փոխառությունները հատկապես մեծ նշանակություն ունեցան այն ժամանակաշրջանում, երբ պարտիան և Սովետական կառավարությունը ձեռնամուխ եղան երկրի ինդուստրիալիզացիայի լայն ծրագրի կենսագործմանը։*

*Այդ ժամանակից ի վեր պետական փոխառությունները կազմում են սոցիալիստական շինարարության և երկրի պաշտպանության ամրապնդման գործի ֆինանսավորման խոշոր աղբյուր։ Փոխառություններից ստացվող եկամուտները պետական բյուջեի միջոցով ծախսվում են մեր տնտեսության զարգացման վրա, նոր ձեռնարկությունների կառուցման, սոցիալիստական արտադրությունն ընդլայնելու, ժողովրդի բարեկեցությունը բարելավելու նպատակների համար։*

*Թե պետական փոխառություններն ինչպիսի զգալի դեր են խաղում ժողովրդական տնտեսության զարգացման գործում, այդ ամենից ավելի ակնառու կերպով ցույց է տալիս կապիտալ ներդրումների գումարի*

համեմատությունը պետական փոխառություններից ստացվող միջոցների հետ։

Առաջին հնգամյակի ընթացքում փոխառություններից ստացված մուտքերը կազմեցին 5,9 միլիարդ ռուբլի կամ կատարված բոլոր կապիտալ ներդրումների 11,5 տոկոսը։ Երկրորդ հնգամյակի ընթացքում այդ մուտքերը կազմեցին 19 միլիարդ ռուբլի կամ բոլոր կապիտալ ներդրումների 16,5 տոկոսը և երրորդ հնգամյակի երեք տարվա ընթացքում՝ 20,7 միլիարդ ռուբլի կամ բոլոր կապիտալ ներդրումների 19,2 տոկոսը։

Պետական փոխառությունների դերը հատկապես աճեց Հայրենական Մեծ պատերազմի տարիներին։ Պատերազմի ժամանակամիջոցում փոխառություններից ստացված մուտքերը կազմեցին 76,1 միլիարդ ռուբլի, մեկ և կես անգամ գերազանցելով խաղաղ շինարարության ժամանակաշրջանում փոխառությունների գծով պետական բյուջեում կատարված մուտքերից։

Այս թվերը սովետական ժողովրդի միասնության և համախմբվածության, նրա հայրենասիրության, Հայրենիքի նկատմամբ նրա նվիրվածության և դեպի մեծ Ստալինն



ունեցած անսահման սիրո վառ արտահայտությունն են։

Հայրենական պատերազմի տարիներին սովետական մարդիկ բաժանորդվելով ռազմական փոխառություններին, ասում էին. «Մենք թշնամուն հարվածում ենք և՛ հրակով, և՛ աշխատանքով, և՛ ռուբլով»։ Սովետական փոխառությունների յուրաքանչյուր պարտատոմսատեր Հայրենական Մեծ պատերազմի մասնակից էր։

Հայրենական պատերազմի հաղթական ավարտումից հետո, Սովետական կառավարությունն անցյալ տարի բաց թողեց ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման պետական փոխառությունը։ Հայտարարված 20 միլիարդ ռուբլի գումարը մի քանի օրվա ընթացքում իրացվեց գերակատարումով—22 միլիարդ ռուբլի, ըստ որում Հայաստանում պլանով սահմանված 165 միլիոն ռուբլու փոխարեն իրացվեց 173 միլիոն ռուբլի։

Այդ փոխառությունը նպաստեց նոր հնգամյակի առաջին տարում պարտիայի և կառավարության կողմից առաջադրված խնդիրների հաջող կենսագործմանը։

Սովետական պետական փոխառություն-

ների խնայական ժողովրդական փոխառու-
թյուններ են։ ՍՍՌՄ-ում կան ավելի քան 60
միլիոն պարտատոմսատերեր։ Մեր երկրի
աշխատավորներն իրենց միջոցները պետու-
թյանը փոխառություն տալով, գիտեն, որ
այդ միջոցները կօգտագործվեն հօգուտ
ժողովրդի շահերի, սոցիալիստական շինա-
րարության ֆինանսավորելու նպատակով։

Սովետական փոխառությունների հաջողու-
թյունը բացատրվում է նաև նրանով, որ մեր
փոխառությունների մեջ պետական շահերը
սերտորեն զուգակցվում են յուրաքանչյուր
պարտատոմսատիրոջ անձնական շահերի
հետ։

Փոխառությունները բնակչությանը զգալի
եկամուտներ են բերում շահումների ձևով։
Մինչև 1947 թվականի հունվարի 1-ը բնակ-
չությանը վճարված է ավելի քան 18 միլիարդ
ռուբլի շահում (ներառյալ պարտատոմսի
արժեքը), ըստ որում միայն 1946 թվականին
վճարված է մոտ 4 միլիարդ ռուբլի։ 1947
թվականին բնակչությունը պետական փո-
խառություններից կստանա 4 միլիարդ 880
միլիոն ռուբլու շահում, տոկոսների հետ
միասին։

Պետական փոխառությունների բաժնե-



գրվելու հետ միաժամանակ, բնակչությունը
երկրի ֆինանսական հզորությունն ամրա-
պնդելու գործին մասնակցում է մեկ ուրիշ
ձևով ևս — դա աշխատավորների ավանդներն
են խնայողական դրամարկղներում։

Առ 1-ն հունվարի 1947 թվականի խնայ-
դրամարկղներում բնակչության ունեցած
ավանդների գումարը գերազանցեց 12 մի-
լիարդ ռուբլուց, իսկ Հայրենական պատե-
րազմի սկզբին այն կազմում էր 6,8 միլիարդ
ռուբլի։

Ժողովրդի անսահման վստահությունը
դեպի իր հարազատ պետությունը, նրա
հայրենասիրությունը և աշխատավորների
նյութական բարեկեցության աճումը սովե-
տական պետական փոխառությունների հե-
տագա զարգացման երաշխիքն են։

Սովետական մարդիկ կոմունիստական
պարտիայի գլխավորությամբ ուժեր ու մի-
ջոցներ չեն խնայի ետպատերազմյան հնգ-
ամյա պլանի կատարումն ու գերակատա-
րումն ապահովելու համար։

Մեծ առաջնորդ, հայր և ուսուցիչ ընկեր
Ստալինի շուրջը սերտորեն համախմբված,
նրա իմաստուն ղեկավարությամբ, մեր ժո-

*զոնուրը կընթանա դեպի սոցիալիստական հայրենիքի հետագա բարգավաճումը, դեպի մեր երկրի ժողովրդական տնտեսության հետագա է՛լ ավելի բուռն վերելքը։*

*Լ. ՍՏԵՓԱՆՅԱՆ*
Հայկական ՍՍՌ ֆինանսների մինիստրի տեղակալ

---

## Ի՞ՆՉ ԿԱՐԴԱԼ ՄԱՅԻՍԻ 1-Ի ԱՌԹԻՎ

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Մայիսի մեկը. *Բաղպետհրատ, 1941 թ.։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմի մասին. *Հայպետհրատ, 1946 թ.։*

Ընկեր Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ ճառը Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում 1946 թվի փետրվարի 9-ին։ *Հայպետհրատ, 1946 թ.։*

Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎ.— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 28-րդ տարեդարձը, *«Ագիտ. Բլոկնոտ» № 19—20, 1945 թ.։*

Ա. Ա. ԺԴԱՆՈՎ.— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի 29-րդ տարեդարձը։ *Պետհրատ, 1946 թ.։*

Հետպատերազմյան ժամանակաշրջանում գյուղատնտեսության վերելքի միջոցառումների մասին ՀամԿ(բ)Պ Կենտկոմի պլենումի որոշումը, ընդունված ընկ. Անդրեևի զեկուցման առթիվ։ *Հայպետհրատ, 1947 թ., կամ «Ագիտ. բլոկնոտ» № 8, 1947 թ.։*

Օրենք ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման 1946—1950 թ. թ. հնգամյա պլանի մասին։ *Հայպետհրատ, 1946 թ.։*

Օրենք Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման 1946—1950 թ. թ. հնգամյա պլանի մասին։ *Հայպետհրատ, 1946 թ.։*

Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի Կենտրոնական Կոմիտեի դիմումը բոլոր ընտրողներին։ *«Ագիտ. բլոկնոտ» № 5, 1947 թ.։*

---

Պատասխանատու խմբագիր՝
Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

*ՎՖ 01385 Պատվեր 553 Տիրաժ 9600*

*Ստորագրված է տպագրության 21/IV 1947 թ.*
*Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին կից Պոլիգրաֆ. և Հրատ. [illegible] տպարան Երևան*